Բաղդասարյան, Է. Մ. (1970) *Երզնկայի հայկական իշխանությունը XIII-XV դարերում.* Լրաբեր Հասարակական Գիտությունների, № 2 . pp. 36-44.

# ԵՐԶՆԿԱՅԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅՈՒՆԸ XIII—XV ԴԱՐԵՐՈՒՄ

Է. Մ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ

*Մոնղոլական արշավանքների խմորման շրջանում Երզնկան և Եկեղյաց գավառը գտնվում էին Իկոնիայի սելջուկյան իշխանության կազմում, իբրև առանձին էմիրություն. բայց պահպանել էին իրենց հայկական դիմքը։ Ժամանակակից հայ և օտար աղբյուրների վկայությամբ, քաղաքի ու նրա շրջակա բնակչության հիմնական մասը հայերն էին, որոնց հետ խառը բնակվում էին որոշ թվով հույներ ու սելջուկներ։ Գտնվելով Հայաստանի վրայով հարավից հյուսիս և դեպի արևելք ձգվող տարանցիկ առևտրական ճանապարհների կենտրոնում, Երզնկան շարունակում էր մնալ իբրև առևտրի, արհեստագործության նշանավոր կենտրոններից մեկը։ Քաղաքի արհեստագործության բազմաթիվ նմուշներ լավագույնի համբավ էին վայելում և մեծ պահանջարկ ունեին Արևելքի շուկաներում։*

*Սակայն շուտով Երզնկային վիճակվեց պետականությունը կորցրած Հայաստանի քաղաքներին հատուկ այն ծանր ճակատագիրը, երբ նախկին նվաճողը պարտվելով, քաղաքն անպաշտպան է թողնում նոր նվաճողների առջև և պաշտպանության գործը բացառապես ընկնում է վատ զինված հայկական բնակչության ուսերին։*

*Երզնկան մոնղոլներն առաջին անգամ նվաճեցին 1243 թ.։ Դրանից մի փոքր առաջ նրանց հաջողվում է Ջաման Կատուկի ճակատամարտում ջախջախել Իկոնիայի սուլթանին, որն անապարանքով նահանջել էր դեպի արևմուտք՝ ճակատագրի քմահաճույքին թողնելով քաղաքի բախտը։ Ջնայած ուժերի բացահայտ անհավասարությանը, Երզնկայի հայ բնակչությունը համառ դիմադրություն է կազմակերպում մոնղոլական հրոսակների դեմ։ Կիրակոս Գանձակեցին վկայում է, «և բնակիչք քաղաքին բազում հարուածս հասուցեալ ի վերայ զորացն Թաթարաց»[1]։ Քաղաքի պաշտպանների հերոսական դիմադրության մասին է խոսում այն փաստը, որ սկզբում չկարողանալով կոտրել նրանց դիմադրությունը, մոնղոլներն ստիպված են լինում շարունակել իրենց առաջխաղացումը և միայն Կեսարիան ու Սեբաստիան գրավելուց հետո, ամբողջ ուժերը կենտրոնացնելով Երզնկայի դեմ, երկարատև պաշարումից հետո, միա՛յն խաբեությամբ գրավեցին այն։ Մտնելով քաղաք՝ մոնղոլները դաժան հաշվեհարդար տեսան քաղաքի պաշտպանների հետ։ Կիրակոս Գանձակեցու վկայությամբ միակ մխիթարությունը լինում է այն, որ մոնղոլական բանակում եղած հայերը հնարավորին չափ աշխատում են թեթևացնել բնակչության վիճակը, նրանց մի մասին փրկելով կոտորածից և գերեվարությունից. «Մանաւանդ մեծամեծ իշխանքն Աւագն և Շահնշահն, Վահրամ և որդի իւր Աղպուղան և խաչենցիքն՝ Ջալալն Հասան, և զօրք իւր, և ազգականքն, և Գրիգոր Դոփին որդի՝ մօրաքուեր որդի Ջալալին, և այլ իշխանքն և զօրք նոցին ըստ կարի իւրեանց։ Եւ այս եղև ի ՈՂԲ [1243] թուականիս հայոց»[2]։*

*Ավերելով քաղաքը և զրկելով նրան պաշտպանական միջոցներից, մոնղոլներն իրենց առջև հավանաբար նպատակ չէին դրել հիմնովին կործանել այն, այլապես աննպատակ և անիմաստ կլիներ Երզնկայում «շահնա» (ոստիկան) թողնելը։ Թե որքան ժամանակ է Երզնկան կառավարվել մոնղոլական կառավարչի կողմից դժվար չէ կռահել, եթե նկատի առնենք, որ 1248 թ. մոնղոլների օգնությամբ Երզնկայում Իկոնիայի սուլթան է հռչակվում Ռուքն-էդ-դինը։ Բայց այս անգամ սելջուկյան տիրապետությունը այլևս երկար չի տևում, որովհետև 1256 թ. մոնղոլները մի նոր արշավանք են ձեռնարկում դեպի Երզնկա և նորից զրավում այն։*

*Միջանկյալ նշենք, որ ըստ իրենց որդեգրած քաղաքականության, մոնղոլներն Իկոնիայի սուլթանությունը նվաճելուց և հարկատու դարձնելուց հետո, վերադարձրել էին սուլթանի ժառանգներին։ Ըստ երևույթին, նրանց 1256 թ. երկրորդ արշավանքը Երզնկայի վրա թելադրված է եղել սուլթանության ապստամբությամբ։ Որ սուլթանությունը այս շրջանում մոնղոլներից անկախ կամ ապստամբ վիճակում էր գտնվում, հաստատվում է թեկուզ այն փաստով, որ Կիլիկիայի*

---

[1] Կ ի ր ա կ ո ս Գ ա ն ձ ա կ ե ց ի, Պատմութիւն հայոց, Երևան, 1961, էջ 283։

[2] Նույն տեղում, էջ 284։

հայոց Հեթում Ա թագավորը 1254 թ. մոնղոլական Մանգու խանի մոտ բանակցությունների գնալիս ստիպված է լինում ծպտված անցնելու սուլթանության միջով, այդ թվում և Երզնկայով[3]։

Որոշակի դժվար է ասել, թե մոնղոլները Երզնկան երկրորդ անգամ գրավելուց հետո, ինչպիսի վարչություն ստեղծեցին այնտեղ, սակայն փաստն այն է, որ մի քանի տարի անց Երզնկա քաղաքը և Եկեղյաց գավառը ժառանգաբար կառավարում էին հայ իշխանները։ Այս փաստն, ինչ խոսք, ուսումնասիրողներին վաղուց հայտնի է և այս մասին բավականաչափ գրվել է, սակայն, որքան մեզ հայտնի է, հայկական իշխանության վերստեղծման հանգամանքները առանձին քննության նյութ չեն դարձրել։ Նրանցից միայն Ա. Սրապյանը, հենվելով Հ. Մանանդյանի այն ճիշտ եզրակացության վրա, թե մոնղոլները ընդհանրապես չէին փոխում նվաճված երկրների քաղաքական կարգը, այլ աշխատում էին իրենց շահերին ծառայեցնել տեղական զինվորական ուժերն ու վարչական ապարատը, ենթադրում է, թե նույնը տեղի է ունեցել նաև Երզընկայում[4]։ Այս տեսակետը, կարծում ենք, որոշ բացատրության և լրացման կարիք ունի։

Նախ՝ մոնղոլները այդպես էին վարվում ոչ միայն հայ և վրաց իշխանավորների նկատմամբ, այլև, ինչպես վերը նշվեց, Իկոնիայի սուլթանության, այդ թվում և Երզնկայի էմիրության նկատմամբ (1243 թ. Երզնկան նվաճվելուց հետո նորից հանձնվեց սելջուկ տիրողներին)։ Հետևաբար հայկական իշխանության վերստեղծումը Երզնկայում, որ վաղուց ի վեր կառավարում էին սելջուկ էմիրները, չի կարող դիտվել իբրև նույն քաղաքականության արդյունք, ինչ ասենք հայ կամ վրաց իշխաններին իրենց տիրույթներում վերհաստատելը և նրանց «ինջու-ի» իրավունք տալը։ Որովհետև այս դեպքում Երզնկայի մահմեդական տերերին փոխարինելով քրիստոնյա հայ իշխաններով, մոնղոլները ոչ միայն արմատական վերափոխություն էին կատարում իշխանության հարցում, այլև հետապնդում էին որոշակի նպատակներ։ Մեր կարծիքով այն առավելապես կապված էր Մերձավոր Արևելքում և Փոքր Ասիայում մոնղոլների նոր ստրատեգիական պլանի հետ և մասամբ արդյունք էր հայ-մոնղոլական ռազմա-քաղաքական դաշինքի։

Հեթում Ա-ն թաթար-մոնղոլական արքունիքից վերադառնում է 1256 թ. և իբրև մոնղոլական կայսրության վասալ ու դաշնակից՝ մասնակցում Իկոնիայի սուլթանության դեմ հիշյալ թվականի արշավանքին։ Հեթում պատմիչի վկայությամբ, մինչ այդ Մանգու խանը համաձայնություն էրավել Հեթումին հանձնելու թուրքերի՝ Կիլիկյան թագավորությունից նվաճած երկրները, ինչպես և թեթևացնելու հարկերը և, ընդհանրապես, հայերի վիճակը բուն Հայաստանում։ Հայտնի է, որ թաթարները ինչ որ չափով կատարեցին իրենց խոստումը[5]։

Թաթարները սկսում են ծրագրել առաջավոր և Փոքր Ասիայի համար կարևոր նշանակություն ունեցող մի արշավանք, որը պետք է հիմնովին փոխեր իրերի և ուժերի փոխհարաբերությունն այդ երկրամասերում։ Դա Բաղդադի խալիֆաթի վերջնական նվաճումն էր և մահմեդականության միջնաբերդի կործանումը։ Հասկանալի է, որ այս խնդրի լուծման ճանապարհին մոնղոլները պետք է վերացնեին հավանական խոչընդոտները, որոնցից մեկը Իկոնիայի սուլթանությունն էր։ Սակայն, 1256 թ. Իկոնիայի սուլթանության ջախջախումից հետո էլ, մոնղոլներին պետք էր ամուր թիկունք, և պատահական չէ այս շրջանում քրիստոնեական տարրերին

---

[3] Նկատի ունենք Ապուլ ֆառաջի հաղորդած զրույցը Հեթում Ա-ի հետ Երզնկայում պատահած միջադեպի մասին, տե՛ս Յ. Քիւրտեան, Երիզա եւ եկեղեաց գաւառ, Վենետիկ, 1953, հ. Ա, էջ 114—115։

[4] Ա. Սրապյան, Հովհաննես Երզնկացի, Երևան, 1956, էջ 13—14։

[5] Մեր կարծիքով ճիշտ չէ այն հետևությունը, թե Հեթումը Մանգու խանի մոտ բանակցություններ վարելիս չէր կարող շոշափել բուն Հայաստանին վերաբերող խնդիրներ։ Տե՛ս История Киликийского армянского государства, Ереван, 1952, стр. 306. Հնարավոր է, որ այդ հարցում Հեթում պատմիչի հաղորդածը որոշ չափազանցություններ պարունակի, սակայն Գրիգոր Ակնեցին ևս չի թաքցնում, որ Հեթում Ա-ն խանի մոտ գնալիս հետապնդում էր ոչ միայն իր երկրի, Կիլիկիայի անվտանգության շահերը ապահովելու, այլև համահայկական, ավելին, նույնիսկ Արևելքի համաքրիստոնեական շահերը պաշտպանելու նպատակ. «Ապա վասն սիրոյ քրիստոնեից, եւ առաւել՝ վասն իւր սեփական երկրին, գնաց բագում գանձիւք առ Մանկուղանն, եւ հոգաց չթողուլ երկիրս իւր զայսպիսի բարկութիւնս, եւ յորժամ հասավ առ ղանն կամօքն աստուծոյ, մեծարեցաւ ի ղանէն. և արարեալ ղանն մեծ պատիւ և հարկիս թագաւորին հայոց և զամենայն բան նորա հոգաց ըստ կամաց նորա...» («Պատմութիւն ազգին նետողաց», Ս. Պետերբուրգ, 1870, էջ 22—23)։ Հեթում Ա-ն Հայաստանում հանդիպելով հայ իշխաններին, ըստ երևույթին մանրամասն քննարկել էր Մանգու խանին ներկայացնելիք իր խնդիրները, այդ հարցում լսելով հայ իշխանների կարծիքները։

ահռաշահելը։ Հետաքրքիր է, որ Գանձակեցին Կարինի, Երզնկայի և Հայաստանի մյուս քաղաքների նվաճումը նկարագրելիս (Բաչու Նոյինի կողմից՝ 1256 թ. Նախկինի պես խորը կսկիծով չի խոսում ինչպես 1243 թ. մասին, որովհետև այդ շրջանում հիմնականում թուրքական բնակչությունն էր կոտորվում։ Պարզ է, որ մոնղոլների համար արդեն միևնույնը չէր, թե ում էին կոտորում։ Պատմական այս ֆոնի վրա է, որ երևան է գալիս Երզնկայի հայկական իշխանությունը։ Այս, ինչպես և այն հանգամանքը, որ մոնղոլները հետագայում ամեն կերպ օգնում ու խրախուսում էին հայկական իշխանության գոյատևումը Երզնկայում, հիմք է տալիս ասելու, որ սուլթանությունից նվաճած հայկական գավառներում հայկական իշխանությունների վերհաստատումը նրանք դիտում էին իբրև իրենց թիկունքը ապահովելու կարևոր պայման։

Առաջին ստույգ տեղեկությունը Երզնկայի Հայկական իշխանության և նրա գլուխ կանգնած առաջնորդների մասին վերաբերում է 1266 թ.։ Կիրակոս Գանձակեցու վկայությամբ՝ Երզնկայի Սարգիս արքեպիսկոպոսը Հուլաուի համար կնություն է բերում Միքայել պալեոլոգ կայսեր դստերը՝ Դեսպինա Մարիամին, սակայն Հուլաուն մեռած լինելով նրա հետ ամուսնանում է Աբաղա խանը[6]։ Նույն թվականին առաջին հիշատակությունը կա նաև Սարգիս արքեպիսկոպոսի որդու, Երզնկայի Հովհաննես իշխանի մասին. «Գրեալ է ի ՉԺԵ թուին ի հայրապետութեան տեառն Կոստանդեայ եւ յարհեպիսկոպոսութեան տեառն Սարգսի մահրասիայի մեծի. ի քրիստոսապսակ իշխանին մերոյ պարոն Յովհաննէսի տեառն ծառայի, ի յԵկեղեաց գաւառն Եզնկայ»[7]։

Նկատի ունենալով, որ 1266 թ. Սարգիս արքեպիսկոպոսը այնպիսի մեծ հեղինակություն էր ոչ միայն մոնղոլների աչքում, այլև Կոստանդնուպոլսի արքունիքում, որ նրան վստահում են քաղաքական կարևոր նշանակություն ունեցող մի ակտ, պետք է ենթադրել, որ նա նոր մարդ չէր իլխանների մոտ և վաղուց արդեն հայտնի էր իբրև Երզնկայի արքեպիսկոպոս և իշխանահայր։ Մանավանդ, որ Սարգիս արքեպիսկոպոսը այս շրջանում ավարտում է մի հրաշալի տաճարի շինարարությունը, որի կառուցումը հազիվ թե սկսված լիներ թուրքական տիրապետության շրջանում և որի կառուցման համար անպայման մի քանի տարի էր պետք։ Հետևաբար Երզնկայի հայկական իշխանությունը պետք է որ ստեղծված լինի ամենաուշը ԺԳ դարի 50-ական թվականներին։

Սկսած այդ շրջանից, մինչև 1276 թ.՝ մինչև Սարգիս արքեպիսկոպոսի և Հովհաննես իշխանի չարանենգ սպանությունը, Երզնկայում տիրում է խաղաղություն, որը և տալիս է իր առատ պտուղները ինչպես երկրի տնտեսության, շինարարության, առևտրի և արհեստների, այնպես էլ գիտության և մշակույթի բնագավառներում։ Այս շրջանը բնորոշող փաստերից բերենք մեկը. «Կատարեցի զսուրբ աւետարանս ի թուականիս հայոց ՉԻԱ [1272]... ի գաւառս Երիզայ, որ յորջորջի Եկեղեաց գաւառ. ի հայրապետութեան տեր Սարգսի. իշխանակալութեան որդւոյն նորա Պարոն Յոհանիսի, որ է ի ժամանակս սոցա խաղաղութիւն քրիստոնէից, զորս քրիստոս աստուած երկարակեցս արասցէ ամենն»[8]։

Որքան էլ ցավալի է, սակայն վերոհիշյալ մաղթանքը չի կատարվում, որովհետև 1276 թ. սպանվում են ինչպես Սարգիս Արքեպիսկոպոսն, այնպես էլ Հովհաննես իշխանը։ Սակայն նրանց մահով չի վերացվում Երզնկայի հայկական իշխանությունը։ Ա. Սրապյանը նկատի առնելով Հովհաննես Երզնկացու Եկեղեաց իշխանին ուղղված նամակի այն տողերը, ուր ասված է. «...և արեամբն որպէս ճշմարիտ քրիստոնեայ և քրիստոսի ծառայ՝ վկայիցն եղեալ մահակից դաւանակից և դասակից։ Ըստ որում և ձեզ եւ աստուած լինել ժառանգ իշխանութեանն իբր արեամբ,

[6] Օրմանյանը, նրան հետևելով նաև Քյուրտյանը, կասկածելի են համարում Գանձակեցու հաղորդածը այն մասին, որ Դեսպինա Մարիամին կնության բերելու համար ուղարկված է եղել Սարգիս արքեպիսկոպոսը։ Քյուրտյանը մեջ է բերում Աբուլ ֆառաջի հաղորդածը այս առթիվ, ըստ որի «էվթիմիւս Յունաց Անտիոքի պատրիարգը, եկաւ եւ Միքայել Պալեօլոկոսի աղջիկը կնութեան բերաւ Ապաղային», տե՛ս Յ. Քիւրտեան, երիզա եւ եկեղեաց գաւառ, հ. Ա, էջ 129։

Սակայն հարկ է նշել, որ Աբուլ ֆառաջի հաղորդածը չի հակասում Գանձակեցու բերած փաստերին։ Գանձակեցին հաղորդում է, որ Սարգիս արքեպիսկոպոսը գնաց մոնղոլների իբրև դեսպան, հասկանալի է, որ կայսրը իր հերթին չէր կարող քաղաքական նկատառումներով իր աղջկան կնության տալիս նրա հետ չուղարկել հոգևոր և աշխարհիկ նշանավոր մարդիկ և շատ տարօրինակ կլիներ, որ կայսրի դուստրը ճանապարհ գրվեր միայն Սարգիս արքեպիսկոպոսի ուղեկցությամբ։

[7] Յ. Քիւրտեան, Երիզա եւ Եկեղեաց գաւառ, հ. Ա, էջ 129։

[8] Նույն տեղում, էջ 130։

հօր ստացելոյ իշխանութեանս։ Եւ զձեզ ետ աստուած փոխանակ հարց՝ մխիթարութիւն ազգի և սփին հաստատուն սրբոյ եկեղեցոյ և դեղ դիւրացուցիչ խոցոտեալ սրտից քրիստոնեից...»[9], շատ ճիշտ եզրակացության է հանգում, թե խոսքը ուղղված է Հովհաննես իշխանի որդիներին և Սարգիս Արքեպիսկոպոսի թոռներին։ Եվ իրոք, Եկեղյաց գավառի և քաղաքական և հոգևոր իշխանությունը շարունակում է մնալ Սարգիս Արքեպիսկոպոսի տոհմի ներկայացուցիչների ձեռքին։ Այս հանգամանքը հաստատվում է նոր փաստերով։ Մի ձեռագրի հիշատակարանում կարդում ենք. «Արդ, գրեցաւ սա ի մայրաքաղաքն Երզնկայն, ընդ հովհաննեաւ սուրբ փրկչին կաթուղիկէ եկեղեցուն, զոր շինեաց տերն Սարգիս արհիական եպիսկոպոսն և բարեպաշտաւն որդի իւր Յոհաննէսւ Գրեցաւ ի թուականիս հայոց ՉԻԹ [1280], ի թագաւորութեանն Լեւոնի բարեպաշտի. որդւոյ Հեթմոյ, և ի հայրապետութեանն տեառն Յակովբայ և յարհիական եպիսկոպոսութեանն տեառն Ներսէսի՝ թոռին տեառն Սարգսի և աստուածասէր եղբաւր նորին պարոնին Գրիգորիսի և յաշխարհակալութեանն Ապաղա խանին՝ որդւոյ Յուլայուին»[10]։

Որ հոգևոր իշխանությունը դեռևս շատ երկար ժամանակ շարունակվել է մնալ Սարգսի և Հովհաննեսի ժառանգների ձեռին, կասկածից վեր է, որովհետև Սարգսի սպանությունից հետո Երզնկայի արքեպիսկոպոս է դառնում Սարգսի թոռ տեր Ներսեսը, որին էլ հաջորդում են նրա ժառանգները։ Ինչ վերաբերում է քաղաքական իշխանությանը, ապա վերոհիշյալ փաստերին կարելի է ավելացնել հետևյալը։ Թորոս Տարոնացի մանրանկարիչը 1287 թ. Երզնկայի երկրաշարժի առթիվ գրած մի տաղում ասում է.

«Պարոնն զիւր քաղաքն ձգեց
Մինչ ի Բաբերդ գնաց չափառ»[11]։

Հասկանալի է, որ այստեղ ակնարկվող պարոնը չէր կարող Երզնկայի սովորական երևելիներից մեկը լինել, այլապես կնշվեր նրա անունը։ Այնինչ տաղի հեղինակի համար դրա անհրաժեշտությունը չի եղել, որովհետև նա ակնարկում է Եկեղյաց իշխանին, որի ով լինելն առանց անունը տալու էլ պարզ է եղել ժամանակակիցների համար։

Երզնկայի վերոհիշյալ երկրաշարժը պետք է, որ ճակատագրական եղած լինի ոչ միայն քաղաքի բնակչության համար, որը ըստ Տարոնացու տաղի տվեց 10 000 զոհ, այլև հայկական իշխանության։ Ամենածանր հարվածներից մեկն, անշուշտ, այն էր, որ երկրաշարժի ժամանակ հիմնովին կործանվում են քաղաքի պարիսպները, և այն մնում է անպաշտպան սելջուկյան հրոսակների առջև, որոնք մոնղոլների կողմից ջախջախվելուց հետո էլ շարունակում էին որոշակի ուժ ներկայացնել։ Որովհետև Մուսթաֆիսի Նազահատ-ալ-Զուլայի վկայությամբ Երզնկայի պարիսպները վերաշինել է Ալա-էդդին սելջուկը (1297—1307 թթ.), որի տիրապետության տակ, պետք է ենթադրել, գտնվել է քաղաքը[12]։ «...Նա ըստ կասկածամուտ կրից կենցաղոյս եւ ոչ կամելոյ զաւրեղաց տեղեաց տիրողաց, ոչ եղեւ ինձ անդորրութիւն ի տեղւոջ։ Այլ և յանհանգիստ ծփանաց աշխարհային ծովուս ի հարուցմանէ այլազ այլասեռիցն ազանց ի վերայ քրիստոնէից ոչ պատահեաց ախորժելի...»[13] — վկայում է Երզնկացին։ Նույնը հաստատվում է նաև 1292 թ. գրիչ Ահարոնի գրած մեկ այլ հիշատակարանի տվյալներով[14]։

Երզնկայի ճակատագիրը այնուհետև բավական երկար ժամանակ խիստ հեղհեղուկ է դառնում։ Ըստ հիշատակարանների և ժամանակագրությունների հաղորդած կցկտուր տեղեկությունների, քաղաքը երբեմն ենթարկվում է մոնղոլներին, երբեմն էլ սելջուկներին։ Այսպես, օրինակ, վենետիկցի ճանապարհորդ Մարկո Պոլոն, որը Երզնկայով անցել է հենց այս շրջանում, իր-

---

9 Ա. Սրապյան, Հովհաննես Երզնկացի, Երևան, 1956, էջ 15։

10 Երուսաղեմի № 3392 ձեռագիր, էջ 496։ Հիշատակարանը բերելիս օգտվել ենք Լ. Խաչիկյանի կատարած ընդօրինակությունից։

11 Ինչպես նշում է Հ. Քյուրտյանը, Ակինյանը Թորոս Տարոնացու վերոհիշյալ տաղը գրված է համարում 1458 թ. երկրաշարժից հետո, որի հետ Քյուրտյանը չի համաձայնվում։ Կարծում ենք, վերը նկատած իշխանի գոյության փաստը հերքում է Ակինյանի կարծիքը։

12 Յ. Քիւրտեան, Երիզա եւ Եկեղեաց գաւառ, Հ. Ա, էջ 143։

13 Տ. Եպիս. Պալեան, Ցուցակ հայերէն ձեռագրաց վանուց Ս. Կարապետի եւ Ս. Դանիել ի Կեսարիո, Վիեննա, 1963, էջ 56—57։

14 Յ. Քիւրտեան, Երիզա և Եկեղեաց գաւառ, Հ. Ա, էջ 144։

ուղեգրության մեջ խոսելով Հայաստանի քաղաքների մասին նշում է, որ Երզնկան նրանցից ամենահարուստն էր, բնակչությունը հիմնականում թաթարներին հպատակ հայեր էին։

Մեր նպատակից դուրս է մանրամասն շարադրել Երզնկայի և գավառի պատմության հայտնի բոլոր դեպքերը, մի բան, որ մանրամասն արել է Քյուրտյանը։ Սակայն եզրափակելով իր պատմությունը XIV դարի անցքերով նա հանգում է այնպիսի հետևության՝ «Թէ այս կացութենէն կտուժեր երկրին խաղաղ արտադրող և առևտրական ժողովուրդը. որով և մասնավորաբար հայերը, որոնք անտեր ոչխարներու պես ինչ ընելնին, ուր դառնալնին չէին գիտեր»15։ Անշուշտ, ճշմարիտ է, որ այս ասպատակություններից առավել տուժողը նախ և առաջ բնիկ հայկական բնակչությունն էր. սակայն քաղաքը միշտ չէ, որ անօգնական էր, այլ հաճախ պատշաճ դիմադրություն էր ցույց տալիս օտար նվաճողներին, և նույնիսկ այդ խառնակ, շփոթ ժամանակներում կարողանում էր նորից վերականգնել իր իշխանությունը հայ իշխանների գլխավորությամբ՝ ինչպես կտեսնենք ստորև։

Չնայած XIV դարի սկզբներին Երզնկան կորցնում է իր հայկական, քիչ թե շատ կայուն իշխանությունը, քաղաքում և նրա շրջակայքում շարունակվում է զարգանալ մշակութային և տնտեսական կյանքը։ Սա մասամբ բացատրվում է նրանով, որ Երզնկա քաղաքը և նրան շրջապատող գյուղերի հիմնական բնակչությունը մնում էին հայերը, և օտար նվաճողները, որոնց հաջողվում էր այս կամ այն միապետի հովանավորությամբ կարճ ժամանակով տիրանալ եկեղյաց գավառին՝ ստիպված էր հենվել հենց բուն հայկական բնակչության վրա, նաև՝ ընդառաջել նրանց իրավունքներին ու պահանջներին։ Չպետք է մոռանալ այն հանգամանքը ևս, որ Երզնկայի հայկական բնակչությունը ուներ իր որոշակի կազմակերպությունները, որոնք հարկ եղած դեպքում փոխօգնության էին գալիս միմյանց։ Այս տեսակետից խիստ ուշագրավ տեղեկություններ կան Հովհաննես Երզնկացու Երզնկայում կազմակերպված եղբայրության համար գրած «սահմանքում», որի կանոններից մեկը նախատեսում է՝ եղբայրները պարտավոր են օգնել իրենց «եղբորը», եթե վերջինս «ի փորձութիւն մարդկան անդանիցի և բռնաւորաց նեղիցի»16։ Ինչպես ճիշտ կերպով նկատում է Լ. Խաչիկյանը այդ առթիվ գրած իր հոդվածում, կազմակերպության գործունեությունն առավել արդյունավետ էր այն պատճառով, որ նրա մեջ ընդգրկվում էին քաղաքի աշխատավորության ամենալայն շերտերը, որոնք տարբերվում էին ինչպես իրենց զբաղմունքով, այնպես էլ կարողություններով։ Քաղաքում և գավառում հայկական տարրերի ազդեցության մասին է վկայում և այն հանգամանքը, որ այս շրջանում ևս Երզնկայում շարունակում էին ապրել բազմաթիվ նշանավոր մեծատուն հայեր, որոնք մեծարվում էին ամիր, պարոն և խոջա տիտղոսներով։ Մյուս կողմից, շարունակում է գոյատևել Սարգիս արքեպիսկոպոսի և Հովհաննես իշխանի գերդաստանը, ըստ որում արքեպիսկոպոսությունը մինչև XV դարի վերջը՝ առանց ընդմիջման, մնում է այդ տոհմի ժառանգների սեփականությունը, որի մյուս անդամները մեծարվում են վերը նշված աշխարհիկ տիտղոսներով։ Ամենայն հավանականությամբ հենց սրանց էլ հաջողվում է քաղաքի և գավառի ամբողջ իշխանությունը հետագայում նորից կենտրոնացնել իրենց ձեռքը։

Դժվար է որոշակի ասել, թե Երզնկայի հայկական բնակչությանը ե՞րբ հաջողվեց թոթափել մահմեդական լուծը կամ՝ ավելի ճիշտ՝ վռնդել մահմեդական իշխանին, և քաղաքի ղեկավարությունը իր ձեռքը վերցնել։ Քյուրտյանը նշում է, որ 1355 թ. հետո Երզնկան շարունակում են կառավարել մահմեդական իշխանները։ Երզնկայի տեր է համարվում Հյուսեին պեյը, ապա Մուդահարուդդին Դայերդլն պեյը, որին Քյուրտյանը նույնացնում է Թախրագան կամ Դահարդան (=Թահարթեն) պեյի հետ17։ Որ այս նույնացումը անհավանական է, այդ մասին կխոսենք փոքր ինչ ստորև։

Ամենայն հավանականությամբ հենց Դայերդէն պեյից հետո է, որ Երզնկայում իշխանությունն անցնում է հայերի ձեռքը։ 1374 թ. Հովհաննես Որոտնեցին Լուսավորչի լեռներում գրած իր մի չափածո հիշատակարանում ասում է.

«...Զրաւ գրչութեանս ի գաւառիս Դարանաղից,
ի լեառն Սեպուհ, որ դամբարան
Լուսաւորչին հայոց ցեղից։

---

15 Նույն տեղում, էջ 289։

16 Լ. Խաչիկյան, Երզնկա քաղաքի «Եղբարց միաբանութեան» կանոնադրությունը (1280 թ.), Բանբեր Մատենադարանի, 1962, էջ 365—376։

17 Տե՛ս Յ. Քիւրտեան, Երիզա եւ եկեղեաց գաւառ, Հ. Ա, էջ 289։

Այլ աւրհնութեամբ անզրաւ բանից
Ցիշեցէք զիշխանն գլուխ բարեպաշտից
ԶՀայկաղնի զարմ մեծից,
Ըզխութլուշահ ծնունդ հրաշից
Որ ետ պատել զաւետարանս՝ հալալ յընչից,
Ի յիշատակ իւր ծնողաց՝ այլև զարմիցս»[18]։

Այստեղ Խութլուշահ հայ իշխանի հիշատակումը շատ հետաքրքրական է ոչ միայն այն իմաստով, որ հաստատում է XIV դարի չորրորդ քառորդում Երզնկայում հայկական իշխանության գոյության փաստը, այլև որոշակի պարզություն է մտցնում հետագայում այս կամ այն առիթով հիշատակված մի շարք իշխանների ազգային կրոնական պատկանելության և իրավունքների մասին։ Հարցն այն է, որ Երզնկայի հայ իշխանները սովորաբար անվանվում են պարոն կամ ամիր։ Եվ այս տիտղոսների երկակի իմաստը ստեղծել է այնպիսի թյուրիմացություն, թե վերոհիշյալ պարոնները և ամիրները պարզապես մեծատուններ են առանց քաղաքական իշխանության։ Մյուս կողմից հայ իշխաններից շատերը, ինչպես հայտնի է, սկսած դեռևս IX—X դարերից, հաճախ կրում են օտար անուններ, ինչպես Խութլուշահ, Սուլեյման, Պակթամուր, Հասան-Ջալալ և այլն։ Եվ ահա Երզնկայում գրված մի շատ հետաքրքիր հիշատակարանում թվարկվում են մի շարք հայ ազնվականներ, որոնց թվում և վերոհիշյալ Խութլուշահը, այդ անվան կրճատ Խութլու ձևով, որը արդեն վախճանված է եղել։

«Շնորհիւ տեառն սկսայ և ողորմութեամբ նորին կատարեցի… եւ… Գրիգորիս… ի Հայոց թուականիս ՊԼԵ [1386], յունիս Ժ[10], ի խնդրոյ բարի և հաւատարիմ ծառային աստուծոյ Թաճատինի, որդւոյ խաւճա Ահարոնի, և մարենի դասէն թոռն տէր Սարգսի, որ մեծաւ յուսով և բաղում փափագանաւք և ցանկութեամբ խնդրեաց զսայ ի լուսաւորութիւն անձին իւրոյ և ի մխիթարութիւն լսողաց հաւատացելոց։

Կրկին աղաչեմ զամենեսեան յիշել ի տէր զստացաւղ սորա զամիր Թաճատինն՝ ծնողաւք և գնուաւղ գրչակս՝ ծնողաւք և դուք յիշիք ի տէր… Այլ և մի պակասեցէ ի սմանէ (Երզնկայի ս. կաթուղիկէից—Է. Բ.) երդ սաղմոսաց, ձայնք պաշտամանց, բուրումն խնկոյ՝ մի պակասէ ի դրանէ սորայ։ Եւ սպասաւորք սորա և պատարագիչք՝ առաջինքն և վերջինքս, մնասցեն սրբութեամբ ի կամս աստուծոյ։ Նայ և զաստուածասէր պարոնս մեր զամիր Սուլայիման շնորհեացէ այս սուրբ տոմարիս և մեզ ընդ երկայն աւուրս, զարտաքոյ ամենայն փորձ (անաց)… այլև զբարի և զհա(ւատացեալ)… զամիր Խութլուն որ է փոխեալ ի Քրիստոս լուսաւորէ զաստուածգիր հոգին և երկն(աւոր) (արք)այութեան արժանի առնէ, ամէն…»[19]։

Կասկածից վեր է, որ այստեղ հիշատակված ամիր Խութլուն նույն հայ իշխան Խութլուշահն է, որը հավանաբար Երզնկայի հայ իշխանական և արքեպիսկոպոսական ուղղակի ժառանգներից մեկն է եղել։ Դա երևում է նաև այն բանից, որ նրա ազգականներից մեկը՝ Թաճատինը ևս սերում էր տեր Սարգսի տոհմից։ Ինչ վերաբերում է աստվածասեր պարոն Սուլայիմանին, ապա ոչ մի հիմք չկա կասկածելու, որ նա եղել է Խութլուշահի որդին։

Նույն շրջանում, Երզնկայում գրված մեկ ուրիշ ձեռագրում ևս հիշատակվում են մի խումբ հայ իշխաններ, որոնք դարձյալ սերում են նույն տոհմից։ Գրիչ Հովհաննեսը, մաղթում է հիշել Երզնկայի արքեպիսկոպոս Տեր Գրիգորին, որը եղել է պարոն Պակթամուրի որդին, ինչպես և տեր Գրիգորի որդի պարոն Հովհաննեսին և վերջինիս որդի պարոն Պակթամուրին իրենց մերձավորներով հանդերձ[20]։

Առաջին հայացքից երկու հիշատակարաններում հանդես եկող տարբեր հայ իշխանավորների անունները կարող են վերը նշված թյուր տպավորությունը ստեղծել, թե նրանք բոլորն էլ քաղաքական իշխանությունից զուրկ մեծատուններ են։ Սակայն այն հանգամանքը, որ նրանք

18 Քյուրտյանը կարծում է, թե այս Խութլուշահը Հովհաննես Որոտնեցու նախնիներից մեկն է, սակայն դա պնդելու ոչ մի հիմք չկա, քանի որ վերոհիշյալ Խութլուշահը Երզնկայի կամ Դարանաղիքի իշխան է համարվում (այդ երկու գավառները հաճախ միացվել են կամ նույնացվել) և բացի այդ դա Խութլուշահի մասին միակ տեղեկությունը չէ։ Նույն տեղում, էջ 301։

19 ՀՍՍՀ Մինիստրների սովետին առնթեր Մեսրոպ Մաշտոցի անվան հին ձեռագրերի գիտահետազոտական ինստիտուտ, Մատենադարան (այսուհետև Մատենադարան), № 557 ձեռագիր, էջ 227ա-228ա։ Տե՛ս նաև Լ. Խաչիկյան, ԺԴ դարի հիշատակարաններ, էջ 560—561։ Այստեղ սակայն հիշատակարանի վերջը չի բերված՝ անընթեռնելի լինելու պատճառով։ Մեծ դժվարությամբ հաջողվեց, գրեթե լրիվ վերականգնելու հիշատակարանի բնագիրը։

20 Մատենադարան, ձեռ. № 1980, էջ 40բ։

սերում են Երզնկայի իշխանական նույն տոհմից, որի իշխանական իրավունքը և ազնվական ծագումը ճանաչվել էր դեռևս իշխանների և հավանաբար բյուզանդիայի կայսրների կողմից, հատկանշական է դարձնում նրանց բոլորի ազնվական տիտղոսներով հանդես գալու իրավունքը։

Ի վերջո, Երզնկայում հայկական իշխանության և մեծ իշխանությամբ օժտված ու համընդհանուր ճանաչում գտած հայ իշխանի մասին շատ արժեքավոր տեղեկություններ է հաղորդում XV դարի սկզբի նշանավոր ճանապարհորդ՝ իսպանական թագավորի դեսպան Կլավիխոն, որի հաղորդած տեղեկությունները, սակայն, մեր պատմագրության մեջ պատշաճ ուշադրության չեն արժանացել՝ մի մեծ թյուրիմացության հետևանքով։

Ամեն ինչ սկսվել է Թովմա Մեծոփեցու հաղորդած տեղեկություններից։ Թվարկելով Լենկ Թեմուրի 1395 թ. շահատակությունները Հայաստանի զանազան գավառներում, Մեծոփեցին հայտնում է. «Ե՛ւ եկն դարձեալ յաշխարհն արեւելից եւ գնաց ի վերայ Երզնկայ քաղաքին սիրով էառ զնա, եւ զմեծ կաթողիկէն զսուրբ Սարգիսն ի հիմանէ քակեաց եւ զայլ եկեղեցիսն զամենայն կործանեաց չարախօսութեամբ Թախրաթան Պարոնին եւ այլ ամենայն տաճկաց քաղաքին»21։

Ելնելով վերոհիշյալից Ղ. Ալիշանն էլ եզրակացնում է, թե «թաթարաց բարեկամութիւնը շատ երկար չտևեց, երբ որ սկսան իրենք ալ տկարանալ, և թուրք ցեղերն զօրանալ. որք ԺԴ դարուն մէջ տիրեցին այս քաղաքիս և շրջակայից անոնցմէ էր Թահերդան կամ Թախրադան, որ անձնատուր եղաւ Թէմուր Լէնկի (1393), և առաջնորդ ու գործակից անոր աւերանացը, որոյ մէկ գործն այլ եղաւ Սարգսի շինած հոյակապ Ս. Փրկիչ կաթողիկէն քակելը, հանդերձ ուրիշ եկեղեցիներովը»22։

Բայց, ինչպես տեսանք, թաթարական իշխանության թուլացման և երկրի անիշխանության մատնված ժամանակ են հանդես գալիս Խութլուշահ հայ իշխանն ու նրա ժառանգները, հետևաբար ասել, թե Երզնկան և Եկեղեաց գավառը XIV դարում ընդհանրապես անցան թուրքերի ձեռքը, ճիշտ չէ։

Սակայն այժմ մեզ առավել հետաքրքրողը Երզնկայի իշխան կամ պարոն Թահարթենի (=Թախրադան), հետ առնչվող հարցերն են։

Կլավիխոն, որը Երզնկայում է եղել Եկեղյաց գավառը Թեմուրի տիրապետության տակ անցնելուց ընդամենը մի քանի տարի հետո, օգտվելով ականատեսների պատմածներից, բավական մանրամասն նկարագրում է Երզնկայի մոտակա անցյալի իրադարձությունները և իր շրջանի անցքերը։ Նա մասնավորապես խոսում է Երզնկայի իշխան Թահարթենի անձնավորության ու գործունեության մասին և նրա հաղորդած տեղեկությունները տրամագծորեն հակառակն են պնդում ինչպես Թահարթենի անձնավորության, այնպես էլ նրա վարած քաղաքականության վերաբերյալ։ Ըստ Կլավիխոյի «հայերն են շինել Արզինչանը», որտեղ իր տեսած շրջանում էլ ապրում էին «շատ պաշտոնական անձնավորություններ և փարթամ վաճառականներ»։ Բնակիչների մեծագույն մասը եղել են հայերն ու հույները։ Երզնկայի տերը. Թեմուրի տիրապետության տակ անցնելուց առաջ, եղել է «Թահարթեն անունով մի մեծ ազնվական», որը բացի Երզնկայից տիրել է նաև «շրջակա հողերի ընդարձակ շրջանի, այդ թվում և «Կամակ». հավանաբար Կամախ անառիկ ամրոցին23։

Որ Թահարթենը իրոք հզոր իշխան է եղել, հաստատվում է թեկուզ և այն փաստով, որ նա համարձակորեն ընդդիմանում է թուրքական սուլթան Բայազետի Կամախի անառիկ ամրոցը հանձնելու պահանջին24։

Կլավիխոյի հաղորդածից պարզվում է նաև, որ Թահարթենը ոչ միայն պատճառ չի դարձել Երզնկայի եկեղեցիների ավերման, այլև, ընդհակառակը, թուրքական հարձակումից իր իշխանության սահմանները ապահովելու համար ստիպված լինելով ընդունել Թեմուրի գերիշխանությունը, շարունակում է հովանավորել քաղաքի և շրջակայքի հայ բնակչությանը ու փրկում նրան Թեմուրի վայրագություններից։ Այս հանգամանքը խիստ գրգռում է Երզնկայի թուրքերին, որոնք և բողոքում են Թեմուրին՝ Թահարթենի դեմ։ Թուրքերը Թահարթենին մեղադրում են այն բանում, որ քրիստոնյաները Երզնկայում բոլոր տեսակետներից արտոնյալ վիճակում են, որ նրանց եկեղեցիները ավելի ճոխ են և ընդարձակ, քան թուրքական մզկիթները և այլն25։

---

21 Պատմութիւն Լանկ Թամուրայ... արարեալ Թովմա վ. Մեծոփեցւոյ։ Հրատ. Կ. Վ. Շահնազարեան, Փարիզ, 1860, էջ 45։

22 Ղ. Ալիշան, Յուշիկք հայրենեաց հայոց..., հ. Բ, Վենետիկ, 1921, էջ 411։

23 Հ. Հակոբյան, Ուղեգրություններ, Երևան, 1932, հ. Ա., էջ 95—96։

24 Նույն տեղում, էջ 98։

25 Նույն տեղում, էջ 96—97։

Կլավիխոն հայտնում է նաև, որ Թահարթենը իր բարյացակամությունը հայերի նկատմամբ բացատրում է այն հանգամանքով, որ քաղաքի հիմնական արտադրողական տարրը քրիստոնյաներն են և նրանցից էին ստանում հիմնական եկամուտները։ Սակայն Կլավիխոյի հաղորդած փաստերի ուշադիր զննումը բերում է այն համոզման, որ հանձինս Թահարթենի մենք գործ ունենք, ոչ թե քրիստոնյաներին հովանավորող մի խելացի թուրք իշխանավորի հետ, այլ մի իշխանի, որ բնիկ երզնկացի է, հավանաբար քրիստոնյա կամ միայն առերես մահմեդականություն ընդունած[26]։

Նախ Կլավիխոն ինքը Թահարթենին անվանում է հայ իշխան։ Նա հայտնում է, որ Սուլթան Բայազետը ցանկանալով վրեժխնդիր լինել Թեմուրից և Թահարթենից՝ Սվազի գրավման և ավերման համար. «շարժուեց և առաւ այս Արզինջան քաղաքը հայ իշխան Թահարթենից»[27]։ Ընդունենք սակայն, թե Կլավիխոյի կողմից Թահարթենին հայ իշխան անվանելը թյուրիմացություն է, որը սպրդել է նրա ուղեգրության հայերեն թարգմանության մեջ։ Բայց Կլավիխոն Թահարթենին, ոչ միայն հայ իշխան է անվանում, այլև հայտնում է, որ նրա կինը Տրապիզոնի հույն կայսրդուստրն էր։ Անշուշտ, կարող էր նաև մի մահմեդական թուրք կամ թաթար իշխան լինել Տրապիզոնի կայսեր փեսան. սակայն հարցն այն է, որ այդ նշանավոր և հզոր իշխանը ունեցել է մեկ կին։ Ի միջի այլոց այս հանգամանքը Կլավիխոն կողմնակի կերպով ակնարկում է մի քանի անգամ։ Այսպես՝ նա հաղորդում է, որ Երզնկան գրավելու ժամանակ Բայազետը գերի է վերցնում Թահարթենի կնոջը, սակայն պատվով բաց է թողնում նրան։ Մի բան, որ մեր կարծիքով պետք է վերագրել ոչ այնքան Բայազետի ասպետական վերաբերմունքին, որքան նրա դիվանագիտական հմտությանը։ Հասկանալի պատճառներով նա խուսափում է իր դեմ դրգռել Տրապիզոնի կայսրին այն պահին, երբ իր դեմ ուներ Թեմուրի պես մի հզոր թշնամի։ Նույն հանգամանքը հաստատվում է նաև նրանով, որ Թահարթենի քրոջ որդին՝ Շահ ալին, Թեմուրից խնդրում է Թահարթենի ժառանգ ճանաչել իրեն, քանի որ Թահարթենը իր կնոջից զավակ չի ունեցել և իշխանությունը կտակել է ապօրինի զավակին։ Ինչպես տեսնում ենք, այստեղ ևս ակնարկվում է Թահարթենի մեկ կին ունենալու հանգամանքը։ Ուշադրության արժանի է նաև, որ Կլավիխոն խոսելով Երզնկայի իր տեսած իշխանի մասին, որ Թահարթենի ապօրինի զավակն էր, երբեք նրան թուրք չի անվանում, չնայած վերջինիս մոտ եղած մի շարք ազնվականների թուրք լինելու հանգամանքը շեշտում է։

Վերջապես շատ հետաքրքիր է, որ Թահարթենի մասին իբրև բարի և քրիստոնյաների իրավունքը պաշտպանող իշխանի՝ մեզ հասել է հայկական միջնադարյան մի զրույց։ Այստեղ պատմվում է հետևյալը՝ «Պատմեաց Յակոբ վարդապետն. Կոյր մի յԵզնկայն և ունէր վաթսուն հազար դեկան և հանապազ այնու ուրախանայր։ Եւ թուրք մի յաշեալ գողացաւ զայն։ Եւ նա ելեալ աղաղակէր. և բազումք գային ողորմութիւն առնել նմա։ Եւ անօրենն տեսեալ և նա գնաց ողորմութիւն առնել նմա։ Եկն և եբեր նմա հաց։ Եւ առեալ զհացն եկեր և ճանաչեաց զնա։ Եւ նա բուռն եհար զնմանէ, աղաղակեաց ասելով.

— Սա առեալ զդրամն իմ։
Եւ ասեն.
— Զի՞րդ ճանաչեցիր։
Եւ ասէ.
— Հացն դառնացաւ ի կոկորդ իմ։
Եւ թախրաթանն առեալ զքառասուն հազար ետ ի նմա[28]։

Ի միջի այլոց, Քյուրտյանը ևս մեջ բերելով Դախարդայի (=Թահարթենի) մասին Թովմա Մեծոփեցու հաղորդածը, խոստանում է հետագայում ցույց տալ այդ հարցում Մեծոփեցու անհիմն լինելը։ Առայժմ մենք չգիտենք, թե ինչ փաստարկներ ունի Քյուրտյանը, բայց ինչպես վերըասվել է, նա այս Դահարդային նույնացնում է 1355 թ. հետո Երզնկայում իշխած Նուդահարութդին Դայերդեն պեյի հետ, որ մեզ անհավանական է թվում ոչ միայն այն պատճառով, որ չի հաստատվում Թահարթենի թուրք լինելը, այլև այն պատճառով, որ այդ երկուսին իրարից բաժա-

26 Մոտավորապես այս ժամանակ են հավատափոխ արվում, դեռևս իրենց ավատատիրական իրավունքները պահպանած, մի շարք հայ իշխաններ Սյունիքում և Մակվում, տե՛ս. Թովմա Մեծոփեցու «Պատմութիւն Լանկ Թամուրայ», Փարիզ, 1860, էջ 67—73։

27 Հ. Հակոբյան, Ուղեգրություններ, հ. Ա, էջ 96։

28 Մատենադարանի № 8076 ձեռագիր, էջ 72ա—72բ։

նում է գրեթե 45 տարի, իսկ այդ 45 տարիների ընթացքում Երզնկայում իշխել են Խութլուշա՛ և նրա հաջորդող աստվածասէր Սուլայիման հայ իշխանները։

Այս ամենից հետո բնականաբար հարց է առաջանում, թե ինչ ճանապարհով կարող էր Թահարթենի մասին աննպաստ կարծիք ստեղծվել հայ մատենագրության մեջ։ Մեզ թվում է, այդպիսի կարծիք ստեղծել է թուրքական պատմագրությունը, որն առհասարակ թշնամաբար է տրամադրված եղել նրա նկատմամբ։ Պատճառը, թերևս այն է, որ դաշնակցելով Թեմուրի հետ նա համառ դիմադրություն է ցույց տվել Սուլթան Բայազետին, որը Փոքր Ասիայի թուրքերի համար երկրպագության առարկա է եղել։ Պատահական չէ, որ արաբ պատմիչ Արաբ շահը, որը իր իսկ խոստովանությամբ օգտվել է ոչ միայն պատմությունից, այլև ընդհանրապես մահմեդական միջավայրում հյուսվող վիպասանությունից, բավականին աննպաստ տեղեկություններ է հաղորդում Թահարթենի մասին[29]։

Ամփոփելով վերը բերված փաստերը, կարող ենք ասել, որ սկսած XIII դարի կեսերից մինչև XV դարի սկզբները՝ այսինքն մինչև Երզնկայի նվաճումը օսմանցիների կողմից, Երզնկա քաղաքը և նրան կից Եկեղյաց և Դարանաղյաց գավառները որոշ ընդհատումներով կառավարել են հայ իշխանները։ Այս հանգամանքը մեծապես նպաստել է այդ շրջանում Երզնկայի հայոց քաղաքական, տնտեսական և մշակութային կյանքի վերելքին, չնայած հաճախակի կրկնվող այն անմարդկային արհավիրքներին, որոնց ենթակա էր նա այդ տարիներին։

## АРМЯНСКОЕ КНЯЖЕСТВО ЕРЗНКА В XIII—XV ВВ.

Э. М. БАГДАСАРЯН


### Резюме

В первой половине XIII в. армянская область Екегиац и г. Ерзнка находились под властью сельджуков. Однако, по свидетельству армянских и иностранных источников, они сохранили свой национальный облик.

Во время монгольских набегов (1243 г.) армянское население Ерзнка оказало героическое сопротивление чужеземным захватчикам.

Благодаря усилиям видного архиепископа Саргиса и его сына князя Ованеса в 50-х годах XIII в. вновь восстанавливается армянское княжество.

Факты, приведенные в рукописях, свидетельствуют о том, что армянское княжество Ерзнка существовало с некоторыми перерывами вплоть до завоевания города османскими завоевателями (XV в.).

После Тер-Саргиса и князя Ованеса, в годы княжения наиболее видных представителей этой династии—Григориса, Сулеймана, Хутлушаха, Тахартена—княжество Ерзнка продолжает сохранять и развивать свою экономику и культуру.


---

29 Պատմութիւն Լեն Թեմուրայ, թարգ. ի տաճիկ բնագրէ Ա. վարդապետ, Տէր Յովհաննիսեանց..., Երուսաղէմ, 1873, էջ 109 և այլն։ Ընդհանրապես Արաբշահի պատմությունը լի է չափազանցված և իրարամերժ տեղեկություններով։